Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 9 1949

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։*


# ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՖԻՆԱՆՍՆԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*1949 թվի մայիսի 3-ին 20 միլիարդ ռուբլի գումարով բաց թողնված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման չորրորդ պետական փոխառությունը ս. թ. մայիսի 8-ի օրվա վերջին իրացվել է 23 միլիարդ 825 միլիոն 770 հազար ռուբլով՝ 3 միլիարդ 825 միլիոն 770 հազար ռուբլու գերազանցումով։*

*Փոխառության սահմանված գումարի զգալի գերազանցման կապակցությամբ, ՍՍՌՄ Ֆինանսների մինիստրությունը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ցուցումի հիման վրա, կարգադրել է 1949 թվի մայիսի 10-ից ամենուրեք դադարեցնել փոխառության հետագա բաժնեգրությունը։*

ՍՍՌՄ Ֆինանսների մինիստր՝ Ա. ԶՎԵՐԵՎ

*9 մայիսի 1949 թվի։*

# ՊԱՅՔԱՐԵՆՔ ՊՂՆՁԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ, ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

Դեռևս սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արշալույսին՝ 1925 թվականին, բոլշևիկների պարտիայի 14-րդ համագումարում ընկեր Ստալինը ասել է.

«Մեր երկիրն ագրարայինից վերածել իր սեփական ուժերով անհրաժեշտ սարքավորում արտադրելու ընդունակ ինդուստրիալ երկիր,— ահա թե որն է մեր գլխավոր գծի էությունը, հիմքը»:

Հետևելով ընկեր Ստալինի ցուցումներին, կոմունիստական պարտիան, սովետական պետությունը և ամբողջ սովետական ժողովուրդը, իրականացրին ստալինյան հնգամյակների վիթխարի պլանները, հսկայական ջանքեր գործադրեցին սովետական մետալուրգիայի ու մեքենաշինության խոշորագույն հսկաներ ստեղծելու համար և կարճ ժամանակամիջոցում ստեղծվեց այնպիսի



հզոր ինդուստրիա, որն արդեն ապացուցել է իր գերազանցությունը կապիտալիստական երկրների ինդուստրիայի նկատմամբ:

Հայտնի է, որ սև մետալուրգիայի հետ միասին, ժողովրդա-տնտեսական ու պաշտպանական մեծ նշանակություն ունի գունավոր մետալուրգիայի զարգացումը:

Հայկական ՍՍՌ-ն ունի պղնձի և գունավոր այլ մետաղների հարուստ հանքավայրեր և այդ բազայի վրա սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում ստեղծվել ու գործում է պղնձահանքային արդյունաբերությունը, այն է՝ Ջանգեզուրի և Շամլուղի հանքային վարչությունները, Ալավերդու Պղնձաձուլական գործարանը:

Գունավոր մետալուրգիայի զարգացման բազայի վրա մեր ռեսպուբլիկայում ՍՍՌՄ կառավարության որոշմամբ լայն զարգացում են ստանում էլեկտրամեքենաշինական և կաբելային արդյունաբերության ձեռնարկությունները:

Այդ կապակցությամբ մեծ խնդիրներ են դրվում մեր ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի աշխատողների առաջ:

Գունավոր մետալուրգիայի աշխատողները ապահովեցին 1948 թվի պլանների կատարումը և որոշ չափով բարելավեցին ձեռնարկությունների տնտեսական ցուցանիշները։ Սակայն նրանց աշխատանքում դեռևս կան էական թերություններ և բացեր, որոնք պետք է արագորեն վերացնել։

Նախ՝ աշխատանքի տեմպը և արտադրության մակարդակը շատ հետ են մնում Ջանգեզուրի և Շամլուղի հանքերում։ Այդ հանքերը հանույթի ասպարեզում դեռ չեն հասել 1941 թվի մակարդակին, չնայած, որ ներկայումս երկու հանքերն էլ հումքով ու արտադրական-տեխնիկական բազայով ավելի լավ են ապահովված, քան 1941 թվին։

Ջանգեզուրի հանքերում պատերազմի տարիներին ամբողջովին նորացվեց կոմպրեսորային տնտեսությունը։ Դա հնարավորություն է տալիս գայլիկոնելու աշխատանքները կատարել ավելի մեծ խորությամբ, քան հանույթի ներկա մակարդակը։ Բացի դրանից, կան դեռևս չդրված կոմպրեսորներ, հանքահատ մուրճեր, էլեկտրամոտորներ և այլ



սարքավորում։ Նույն վիճակի մեջ են նաև Շամլուղի հանքերը։ Հետևաբար, բոլոր պայմանները կան հանքի հանույթը մեծ չափով ավելացնելու համար։ Սակայն այդ պայմանները լրիվ չափով չեն օգտագործվում։ Նույնը վերաբերում է նաև հանքաքարում պղնձի պարունակությունը ավելացնելու հարցին։ Դա շատ կարևոր ցուցանիշ է, որը, սակայն, տարեց-տարի կամ վատթարանում է, կամ մնում է միևնույն մակարդակի վրա. դրա պատճառն այն է, որ հանքերում պայքար չի մղվում հանքը հարստացնելու համար։

Պղնձահանքային արդյունաբերության մեծ թերություններից մեկն էլ բանվորների աշխատանքի ցածր արտադրողականությունն է։

Մինչդեռ վերջին տարիներս ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը մեծ չափով բարձրացավ՝ համեմատած նախապատերազմյան ժամանակաշրջանի հետ և մեր ռեսպուբլիկայում. ամբողջովին վերցրած, կազմեց 130 տոկոս՝ 1941 թվի մակարդակի նկատմամբ, բանվորների աշխատանքի արտադրողականությունը ութը տարվա ընթացքում բարձրացել

է Ջանգեզուրի հանքերում միայն 1,8 տոկոսով, Շամլուղի հանքերում՝ 3,3 տոկոսով, իսկ Ալավերդու պղնձաձուլական գործարանում նույնիսկ իջել է։ Այս երևույթը բացատրվում է նրանով, որ հիշյալ ձեռնարկությունների տնտեսական ու պարտիական ղեկավարները չեն աշխատում արմատացնել նոր, առաջավոր տեխնիկա և աշխատանքի բարձր արտադրողականություն տվող մեթոդներ, բավարար չափով չի գործադրվում սյունային գայլիկոնումը, ենթահարկային հանքաշերտերի միտական սիստեմը, հողի ու քարի մեքենայացված հավաքումը հանքահորից և այլն։

Ձեռնարկությունների տնտեսական ղեկավարները, պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունները չեն գլխավորել բանվորների սոցիալիստական մրցությունը, չեն ընդհանրացրել և տարածել լավագույն ստախանովականների փորձը։ Ջանգեզուրի և Շամլուղի հանքերում կան արագ գայլիկոնման անվանի շատ վարպետներ, ամրացնողներ ու հանքը տեղափոխողներ՝ ընկ. ընկ. Արամ Խաչատրյանը, Արտյոմ Անտոնյանը, Խանսուվար Գանջալիևը, Գարեգին Հովհաննիսյանը, Դմիտրի Զախարովը, Սարգիս Աքելյանը և ուրիշներ, որոնց փորձը



մյուս բանվորների սեփականությունը չի դարձվում։

«Հայպղինձ» տրեստի և պղնձահանքային ձեռնարկությունների ղեկավարությունը, չըհասկանալով պղնձարդյունաբերության զարգացման պետական կարևորությունը և ցանկանալով հանգիստ ապրել, տարեց-տարի աշխատում էին նվազեցված պլաններ ունենալ ըստ բոլոր ցուցանիշների և պարծենում էին այդպիսի պլանների գերակատարմամբ։

Վերջին չորս տարվա ընթացքում Ջանգեզուրի և Շամլուղի հանքային վարչություններում հանքի հանույթը պլանավորվում էր համարյա միևնույն մակարդակի վրա, առանց հաշվի առնելու փաստորեն ձեռք բերված դրական արդյունքները և աճած հնարավորությունները։ Նույնը վերաբերում է նաև հանքում պղնձի պարունակությունը պլանավորելու գործին։ Վերջին չորս տարվա ընթացքում պղնձի պարունակությունը պլանավորվում էր զգալիորեն ավելի ցածր, քան նախորդ տարիներին փաստորեն ձեռք բերված ցուցանիշները։

Այդպիսի պլանավորումը, որն ըստ էության չի համապատասխանում պետական շահերին, կաշկանդում էր պղնձահանքային

արդյունաբերության զարգացումը և ապամոբիլիզացնում էր այդ ձեռնարկությունների կոլեկտիվներին։ Անհրաժեշտ է ուղղել սխալը և ճիշտ պլանավորել հանքի հանույթը, ինչպես նաև պղնձի պարունակությունը հանքում։ Դրա համար պետք է հենց այժմ վերանայել 1949 թվի այդ ցուցանիշները՝ դրանք բարձրացնելու ուղղությամբ։

Հայաստանի բոլշևիկների պարտիայի 14-րդ համագումարը իր որոշմամբ Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմին հանձնարարեց հատուկ ուշադրություն նվիրել մետալուրգիական արդյունաբերությանը, որպես ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերից մեկի, հետագա զարգացմանը և պարտավորեցրեց արագացնել երկրաբանական-հետախուզական աշխատանքների ավարտումը այդ հանքավայրերում։ Կոնկրետ միջոցառումներ են մշակվել Հայկական ՍՍՌ-ում գունավոր մետալուրգիայի հետագա զարգացման համար։ Նախատեսվում է հանքային բազայի զարգացումը՝ Ալավերդու Պղնձաձուլական գործարանի բեռնվածությունն ապահովելու համար։



Այդպիսով, մեր ռեսպուբլիկայում պղնձահանքի հանույթի մակարդակը արդեն ամենամոտ տարիներին պետք է բարձրանա մի քանի անգամ։

Նախատեսվում է 1952 թվին ավելացնել նաև Ալավերդու պղնձաձուլական գործարանի կարողությունը։ Դա նոր, լայն հեռանկարներ է ստեղծում ռեսպուբլիկայում կաբելի արտադրությունը, էլեկտրամեքենաշինական և պղնձի վերամշակման այլ ճյուղերը զարգացնելու համար։

Կառավարությունը հատկացրել է բավականաչափ միջոցներ, անհրաժեշտ մեխանիզմներ, փոխադրական միջոցներ ու նյութական-տեխնիկական այլ ռեսուրսներ, մի շարք մեծ արտոնություններ է տարածել պղնձարդյունաբերական շինարարության ասպարեզում զբաղված աշխատողների վրա։

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանը և Կաբելի գործարանը ամեն տարի ժողովրդական տնտեսության համար կարտադրեն տասնյակ հազարավոր տրանսֆորմատորներ, գեներատորներ, կոմպլեկտային սարքեր, հարյուր հազարավոր կիլոմետր երկարությամբ կաբելներ ու էլեկտրալարեր և այլ էլեկտրական-տեխնիկական արտադրանք։

Միութենական կառավարությունը և անձամբ ընկեր Ստալինը բոլոր հնարավորությունները ստեղծել են մեր ռեսպուբլիկայում պղնձի, էլեկտրամեքենաշինական արդյունաբերության զարգացման համար: Այս ամենը շատ բան են պարտավորեցնում պղնձահանքային և էլեկտրամեքենաշինական արդյունաբերության ձեռնարկությունների ու շինարարությունների բոլոր աշխատողներին:

Պղնձահանքային ու էլեկտրամեքենաշինական արդյունաբերության բանվորները, ծառայողները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, պատվով կատարելով վերոհիշյալ որոշումները, կհասնեն պղնձի, էլեկտրամեքենաների, կաբելի ու էլեկտրալարերի արտադրության նոր, հզոր վերելքի և դրանով իսկ է՛լ ավելի կամրապնդեն մեր երկրի տնտեսական հզորությունը:

Այդ ձեռնարկությունների ագիտկոլեկտիվները և առանձին ագիտատորներ հսկայական անելիքներ ունեն աշխատանքներում եղած թերությունների վերացման համար գործուն պայքար կազմակերպելու, արտադրության առաջավորների փորձը մասսայականացնելու, առաջավոր մեթոդները արտադրության մեջ արմատավորելու, նորագույն տեխնիկական սարքավորումը լրիվ շա-



փով օգտագործելու համար: Ագիտատորները ոչ միայն իրենք պետք է լինեն արտադրության առաջավորներ, այլև իրենց օրինակով, սոցիալիստական մրցության ծավալման միջոցով պետք է հասնեն այն բանին, որպեսզի լրիվ կերպով կատարեն իրենց ձեռնարկությունների պլանների թե՛ քանակական և թե՛ որակական բոլոր ցուցանիշները:

Ս. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ

---

«Իրականում մրցությունը այն լծակն է, որի օգնությամբ բանվոր դասակարգը կոչված է երկրի ամբողջ տնտեսական ու կուլտուրական կյանքը շուռ տալու սոցիալիզմի բազայի վրա»:

ՍՏԱԼԻՆ

# ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՌԱՄՅԱ ՊԼԱՆԸ

*Սովետական ժողովուրդը, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը, այսօր հիմնականում լուծել է հացահատիկի պրոբլեմը։*

*Յոթ ամիս առաջ, ընկեր Ստալինի նախաձեռնությամբ որոշում ընդունվեց տափաստանային և անտառատափաստանային շրջանների բնությունն արմատապես վերափոխելու, երաշտի դեմ համաժողովրդական հարձակում սկսելու մասին։ Այս որոշումը ծրագրային նշանակություն ունի սոցիալիստական գյուղատնտեսության համար, նա կոչված է ապահովելու հողագործության և անասնաբուծության հետագա զարգացումը։*

*Այսօր մեր առջև դրված է մի նոր փաստաթուղթ— պարտիայի և պետության խոշորագույն առաջադրանքը— ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ «Հանրային անասնաբուծության*



*զարգացման եռամյա պլանը— (1949—1951 թվականներ)»։*

*Այս որոշման հաջող կենսագործմամբ մեր կոլխոզներն ու սովխոզները կհասնեն է՛լ ավելի բարձր զարգացման, է՛լ ավելի բարեկեցիկ կդառնա աշխատավորների կյանքը, կստեղծվի սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար մթերքների առատություն։*

*Հացահատիկային տնտեսության վերելքի գործում ձեռք բերված խոշոր հաջողությունները անհրաժեշտ պայմաններ ստեղծեցին գյուղատնտեսության բոլոր ճյուղերի և ամենից առաջ անասնաբուծության հետագա, է՛լ ավելի հզոր զարգացման համար։ Անասնաբուծության հետագա բազմակողմանի զարգացումը առաջնակարգ նշանակություն ունի բնակչությանը պարենամթերք և թեթև արդյունաբերությանը հումք մատակարարելու համար։ «Ներկայումս,— ասվում է եռամյա պլանում,— երբ լուրջ հաջողություններ են ձեռք բերվել հացահատիկային տնտեսության վերելքի գործում և անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծվել հացահատիկի արտադրության հետագա մեծացման համար, ամբողջ հասակով մեկ ծառացել է անասնաբուծությունը ամեն կերպ զարգացնելու խնդիրը, որպես գյուղատնտեսության*

զարգացման բնագավառում պարտիայի և պետության կենտրոնական խնդիր»։

Հետպատերազմյան տարիներին կոլտնտեսային անասնաբուծությունը ձեռք բերեց նշանակալի հաջողություններ։ 1948 թվականին կոլտնտեսություններում հանրային խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացավ 23 տոկոսով, խոզերինը՝ 75 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 16 տոկոսով։ Խոշոր եղջերավոր անասունների, ոչխարների և այծերի քանակով կոլտնտեսությունները գերազանցեցին նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը։ Սակայն, անասնաբուծության զարգացման մակարդակը ետ է մնում ժողովրդական տնտեսության պահանջներից։

Անասնաբուծության զարգացման եռամյա պլանում նշված են վիթխարի խնդիրներ, որոնց կատարումը ամենակարճ ժամանակամիջոցում կապահովի հանրային կոլտնտեսային և սովխոզային մթերատու անասնաբուծության վերելքը, կնպաստի կոլտնտեսությունների հետագա նշանակալի աճմանը, կբավարարի բնակչության կողմից մսի, ճարպի և կաթնամթերքի, ինչպես և թեթև արդյունաբերության կողմից բրդի, կաշվի և անասնապահական մյուս մթերքների աճող պահանջները։

Հանրային կոլտնտեսային ու սովխոզային



անասնաբուծությունը 1951 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, մսի, ճարպի, կաթի, յուղի և այլ մթերքների արտադրությունը պետք է մեծացնի առնվազն մեկ ու կես անգամ, որպեսզի դրանցով ապահովի քաղաքների, արդյունաբերական կենտրոնների և ամբողջ երկրի բնակչությանը։

Դրա համար ամենից առաջ անհրաժեշտ է նշանակալի չափով մեծացնել հանրային անասունների գլխաքանակը և մթերատվությունը։ Անհրաժեշտ է համարվել, որպեսզի 1948 թվականին յուրաքանչյուր կոլտնտեսությունում կազմակերպվի 4 ֆերմա— խոշոր եղջերավոր անասունների, խոզաբուծական (բացառությամբ այն շրջանների, որտեղ ըստ կենցաղային պայմանների խոզաբուծությունը չի զարգացած), ոչխարաբուծական և թռչնաբուծական (բացառությամբ հացահատիկային ցանք չունեցող կոլտնտեսությունների)։ Ըստ որում անհրաժեշտ է ճանաչված վերանայել անասնաբուծական ֆերմաներում գոյություն ունեցող անասունների գլխաքանակի մինիմումը, զգալիորեն մեծացնել այն՝ ըստ կոլտնտեսություններին ամրացված հողային տարածության։

Հանրային կոլխոզային և սովխոզային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի համապատասխան միայն կոլխոզներում անասունների գլխաքանակը պետք է կազմի ոչ պակաս, քան խոշոր եղջերավոր անասուններինը՝ 1949 թվականին 24 միլիոն, 1950 թվականին 28 միլիոն, 1951 թվականին 34 միլիոն, ոչխարներինը և այծերինը՝ 1949 թվականին 62,4 միլիոն, 1950 թվականին 73 միլիոն, 1951 թվականին 88 միլիոն գլուխ։ Խոզերինը՝ 1949 թվականին 10 միլիոն, 1950 թվականին 13 միլիոն, 1951 թվականին 18 միլիոն։ Թռչուններինը՝ 1949 թվականին 65 միլիոն, 1950 թվականին 120 միլիոն, 1951 թվականին 200 միլիոն։

Կոլխոզներում հանրային անասունների գլխաքանակի աճման հետ միասին պլանով նախատեսված է միջոցառումների մի կոմպլեքս, որն ապահովելու է ոչ միայն այդ առաջադրանքի կատարումն ու գերակատարումը, այլև անասնաբուծության մթերատվության էական բարձրացումը։ Նախատեսնված ձեռնարկումների իրականացումը 1951 թվականին կապահովի ամբողջ Միության գծով միջին հաշվով մի կովից ստանալու առնվազն 1700—2000 կիլոգրամ



կաթ, այդ թվում արոտավայրային անասնաբուծության շրջանների կոլխոզներում՝ առնվազն 800—1000 կիլոգրամ կաթ։

Անասունների գլխաքանակի քանակական ու որակական աճը լուրջ միջոցառումներ կպահանջի կերի բազայի ամրապնդման ուղղությամբ։ Կերի բազան իր անբավարար կազմակերպվածության հետևանքով, ինչպես նշված է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման մեջ, «Ներկայումս գլխավոր խոչընդոտ է հանդիսանում անասունների գլխաքանակի ամենաարագ աճման և նրա մթերատվության բարձրացման համար»։

Եռամյա պլանը նախատեսում է կերի բազայի ամրապնդումն ի հաշիվ կոշտ և հյութալի կերերի բերքի մեծացման, որը պետք է ձեռք բերել խոտացանության ամեն կերպ զարգացնելու, շարքահերկ կերային կուլտուրաներ ցանելու, բնական խոտհարքներն ու արոտավայրերը արմատապես բարելավելու և կոլխոզներում հանրային անասնաբուծության համար հացահատիկային-ֆուրաժային ֆոնդեր ստեղծելու միջոցով։

Բացի վերոհիշյալ աղբյուրներից, կոլխոզների կերի բազան զգալիորեն կաճի ի հա-

շիվ անասունների կերի համար բարձրորակ սպիտակուցային կերերի արտադրության զգալի մեծացման։ Առաջադրանք է տրված արտադրել կոմբինացված կեր, կերային ճոր շաքարասնկեր, արյան և մսա-ոսկրային ալյուր, չոր ժոմ, ձկան կերային ալյուր և այլն։

Զարգացած անասնաբուծական շրջաններում ստեղծվում են հատուկ մեքենա-տրակտորային կայաններ, խիստ ավելանում է մեքենաների և անասնաբուծական ֆերմաների սարքավորման արտադրությունը։ Երեք տարվա ընթացքում պետք է ավարտվի խոտհունձի, սիլոսացման, արմատապտուղների ցանքի և բերքահավաքի, կաթի վերամշակման լիակատար մեքենայացումը։ Դրա հետ միասին լայնորեն արմատավորվելու է ֆերմաներին ջուր մատակարարելու, անասուններին խնամելու աշխատանքների մեքենայացումը, ֆերմաների տրանսպորտի մեքենայացումը, կովերի էլեկտրամեխանիկական կթումը, ոչխարների էլեկտրախուզումը։

Եռամյա պլանով առաջադրանք է տրված սովխոզների անասնաբուծության վերելքի մասին։ Բոլոր սովխոզները, անասունների գլխաքանակը զգալիորեն մեծացնելու, նրանց



մթերատվությունը բարձրացնելու, պետության հանձնվող անասնապահական մթերքների քանակն ավելացնելու և կոլխոզներին վաճառվող բարձր մթերատու անասունների քանակը ավելացնելու հետ միասին, ամենակարճ ժամանակում պետք է վերացնեն չափից դուրս մասնագիտացումը և ապահովեն սովխոզները դարձնելու բազմակողմանիորեն զարգացած տնտեսություններ, ճյուղերի ճիշտ զուգակցությամբ։

Ծավալուն, խորապես մտածված միջոցներ են նշված անասնաբուծության մեջ ազնըվացման գործի բարելավման բնագավառում։

1951 թվականի վերջում բարձր մթերատու բարելավված ցեղական անասունների քանակը կկազմի—կոլխոզներում՝ խոշոր եղջերավոր անասունների ամբողջ գլխաքանակի առնվազն 50 տոկոսը, իսկ սովխոզներում՝ առնվազն 90 տոկոսը, ոչխարներինը՝ կոլխոզներում առնվազն 86 տոկոսը, իսկ սովխոզներում 100 տոկոսը, խոզերինը՝ կոլխոզներում ու սովխոզներում գլխաքանակի 100 տոկոսը։

Ստեղծվում է դասընթացների մի լայն ցանց, որտեղ անասնաբուծության մասնագետները պետք է լրացնեն ու կատարելա-

գործեն իրենց գիտելիքները։ Դասընթացների և դպրոցների ցանցը ընդլայնվում է, որտեղ պիտի պատրաստվեն անասնաբուծության մասսայական պրոֆեսիաների կադրեր։

Անասնաբուծության զարգացման ուղղությամբ նշված մի շարք ձեռնարկումների թվում հատուկ տեղ է հատկացված գիտահետազոտական աշխատանքին, կոլխոզների անասնաբուծական ֆերմաներում աշխատանքի ճիշտ կազմակերպմանը և վարձատրմանը, անասնաբուծական և անասնաբուժական սպասարկման բարելավմանը։

Հանրային կոլխոզային և սովխոզային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի կատարումը սովետական միլիոնավոր մարդկանցից կպահանջի ուժերի լարում։ 1949—1951 թվականներին անասնաբուծության մեջ բարձր ցուցանիշներ ունեցող գյուղատնտեսության առաջավորներին խրախուսելու նպատակով, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը որոշել է նրանցից լավագույններին շնորհել Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, պարգևատրել շքանշաններով ու մեդալներով։ Սահմանված է կարգ՝ երկար տարիների և անբասիր աշխատանքի համար



մասնագետներին շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու, երկար տարիների ծառայության համար կենսաթոշակ նշանակելու, անասունների գոյություն ունեցող տեսակները կատարելագործելու և նոր ցեղեր ստանալու համար 25-ից մինչև 100 հազար ռուբլով պարգևատրելու մասին։ Անասնաբուծության զարգացման ասպարեզում խոշոր ծառայություններ մատուցած բարձրորակ մասնագետների համար սահմանված են «Ռեսպուբլիկայի վաստակավոր զոոտեխնիկ», և «Ռեսպուբլիկայի վաստակավոր անասնաբույժ» պատվավոր կոչումները։

Մեր գյուղական ագիտատորների խնդիրն է լայնորեն մասսայականացնել ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի այս պատմական որոշումը, յուրաքանչյուր կոլխոզնիկի սեփականությունը դարձնել այն, պարզաբանել կոլխոզնիկներին, թե ինչպիսի խնդիրներ է դնում այս որոշումն իրենց կոլխոզի, ֆերմայի, առանձին կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների առաջ, օգնել նրանց կատարելու այդ առաջադրանքները։

Գյուղատնտեսական գիտությունների
թեկնածու՝ Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ

# ՀԱՐԱՃՈՒՆ ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

Վերջերս հրապարակվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1949 թվի առաջին եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ Սովետական ժողովուրդը մեծ գոհունակությամբ ու հպարտությամբ դիմավորեց կառավարական այդ հաղորդագրությունը, որտեղ վառ փաստերով ու թվերի համոզեցուցիչ տրամաբանությամբ ցուցադրված է արդյունաբերության, գյուղատնտեսության և տրանսպորտի զարգացումը, կապիտալ շինարարությունը, ապրանքաշրջանառության ծավալումը և ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը։

1949 թվի առաջին եռամսյակում արդյունաբերության համախառն արտադրանքի



դծով, բացի մի չորս մինիստրությունից, որոնք իրենց պլանները թերակատարել են 3—5 տոկոսով, մնացած բոլոր մինիստրությունները պլանը կատարել են մինչև 111 տոկոսով։

Պլանը կատարելու ընթացքում արդյունաբերության մեջ հայտաբերվել են լրացուցիչ նոր ռեզերվներ և դա հնարավորություն է տվել կառավարությանը ավելացնել 1949 թվի առաջին եռամսյակի պլանով նախատեսված առաջադրանքը։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի ավելացված պլանը կատարվել է 100,2 տոկոսով։ 1949 թվի առաջին եռամսյակում պլանից դուրս թողարկվել է զգալի քանակությամբ արդյունաբերական արտադրանք, այդ թվում. սև և գունավոր մետաղ, ածուխ, շոգեքարշեր, ապրանքատար և մարդատար վագոններ, ավտոմոբիլներ, քիմիական սարքավորում, էլեկտրամոտորներ, ռադիոընդունիչներ, տրակտորներ, հանքային պարարտանյութեր, ավտոդողեր, բամբակեղեն, բրդեղեն և մետաքսեղեն գործվածքներ, միս, կենդանական և բուսական յուղ և արդյունաբերական արտադրանքի շատ այլ տեսակներ։ Այդ բոլորի հետևանքով արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների

արտադրության գծով 1949 թվի առաջին եռամսյակում զգալի փոփոխություններ է կատարվել 1948 թվի առաջին եռամսյակի համեմատությամբ։ Այսպես օրինակ, չուգունի արտադրությունը կազմում է 122 տոկոս, պողպատը՝ 127, գլանվածք՝ 128, պղինձ՝ 114, ցինկ՝ 112, ածուխ՝ 112, նավթ՝ 110, բենզին՝ 109, կերոսին՝ 114, էլեկտրաէներգիա՝ 115, մագիստրալային շոգեքարշեր 120, մագիստրալային էլեկտրոքարշեր 180, մագիստրալային ապրանքատար վագոններ 150, տրոլեյբուսներ 137, բեռնատար ավտոմոբիլներ 148, մարդատար ավտոմոբիլներ 220, ավտոբուսներ 112, գնդակավոր առանցքակալներ 121, մետալուրգիական սարքավորում 159, տրակտորներ 181, հացահատիկային կոմբայններ 170, գյուղատնտեսական մեքենաներ 171, հեծանիվներ 139, ռադիոընդունիչներ 177, ժամացույցներ 244, ավտոդողեր 140, թուղթ 135, բրդեղեն գործվածքներ 133, կաշվի կոշկեղեն 134, միս 117, կենդանական յուղ 124 և այլն։

Այսպիսով ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1949 թվի առաջին եռամսյակում, համեմատած 1948 թվի առաջին եռամսյակի հետ, աճել է 23 տոկոսով։



Գյուղատնտեսության ասպարեզում 1949 թվի առաջին եռամսյակում հաջողությամբ անցկացվեց գարնան դաշտային աշխատանքների նախապատրաստումը։ Մինչև 1949 թվի ապրիլի 1-ը կոլխոզներում և սովխոզներում հիմնականում ավարտվեց գարնանացանի համար հացահատիկային կուլտուրաների սերմերի կուտակումը, իսկ տեխնիկական կուլտուրաների գծով ավելի շատ սերմ էր կուտակվել, քան 1948 թվի նույն ժամկետին։ Խոտադաշտային ցանքաշրջանառությունը մասսայաբար յուրացնելու հետևանքով, կոլխոզները և սովխոզները մինչև 1949 թվի ապրիլի մեկը գարնանացանի համար պատրաստել են բազմամյա խոտաբույսերի սերմեր 67 տոկոսով ավելի, քան մինչև 1948 թվի նույն ժամկետին, իսկ միամյա խոտաբույսերի սերմերի կուտակումը ավելի էր 73 տոկոսով։ ՄՏ կայանները և սովխոզները մինչև 1949 թվի ապրիլի 1-ը ավելի շատ են նորոգել, քան մինչև անցյալ տարվա նույն ժամկետին. տրակտորներ՝ 9 տոկոսով, տրակտորաքարշ գութաններ 14, շարքացաններ՝ 16 և կուլտիվատորներ 21 տոկոսով։

Երկրում արդեն հաջողությամբ են ծավալվում գարնան դաշտային աշխատանքները

գարնանացան կուլտուրաների ցանքը, աշնանացանի սնուցումն ու ցաքանումը: Մինչև 1949 թվի ապրիլի 10-ը ցանվել է 2 միլիոն 300 հազար հեկտար ավելի գարնանացան կուլտուրա, քան 1948 թվի նույն ժամկետում:

1949 թվի առաջին եռամսյակում նախապատրաստություն է տեսնվել դաշտապաշտպան անտառատնկման գարնան աշխատանքների համար: 1949 թվի պլանին համապատասխան ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությունը, ՍՍՌՄ Անտառային տնտեսության մինիստրությունը և ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությունը մինչև 1949 թվի ապրիլի մեկը կազմակերպել են 118 անտառապաշտպան կայան և 241 անտառատնկարան:

1949 թվի սկզբներին անցկացրած անասունների ցուցակագրման արդյունքները ցույց տվին, որ 1948 թվին, չնայած Պովոլժյեի շրջանների մեծ մասում տեղի ունեցած երաշտին, անասնաբուծության վիճակը շարունակվում է բարելավվել: ՍՍՌՄ-ում մթերատու անասունների գլխաքանակի աճը 1949 թվի հունվարի 1-ին, 1948 թվի նույն ժամկետի նկատմամբ, կազմում է՝ խոշոր եղջերավոր անասունների գծով՝ 109 տոկոս,



խոզերինը՝ 155 տոկոս, այծերին ու ոչխարներինը՝ 111 տոկոս: Ձիերի թիվը 1948 թվականին ավելացել է կոլխոզներում 15 տոկոսով և պետական տնտեսություններում 7 տոկոսով:

Նկատելի տեղաշարժեր են կատարված տրանսպորտում: Երկաթուղային տրանսպորտում օրական միջին բեռնման ընդհանուր պլանը 1949 թվի առաջին եռամսյակում կատարվել է 102 տոկոսով: Երկաթուղիներում բոլոր բեռների օրական միջին բեռնումը, համեմատած 1948 թվի առաջին եռամսյակի հետ, 1949 թվի առաջին եռամսյակում ավելացել է 16,5 տոկոսով: Ծովային տրանսպորտով բեռներ փոխադրելու եռամսյակային պլանը կատարվել է 104 տոկոսով:

Զգալիորեն ավելացել է կապիտալ աշխատանքների ծավալը. 1949 թվի առաջին եռամսյակում, 1948 թվի առաջին եռամսյակի համեմատությամբ, այն կազմեց 136 տոկոս:

1949 թվի առաջին եռամսյակում շարունակվում էր սովետական առևտրի հետագա ծավալումը: Բնակչությանը վաճառվել է 22 տոկոսով ավելի ապրանք, քան 1948 թվի առաջին եռամսյակում: Պարենային ապրանքների վաճառքը 1949 թվի առաջին եռամսյակում, համեմատած 1949 թվի առաջին եռամ-

յակի հետ, ավելացել է 15 տոկոսով և ռւ-
պարենային ապրանքների վաճառքը 38 տո-
կոսով։ Դրամական ռեֆորմից և քարտային
սիստեմի վերացվելուց հետո, ՍՍՌՄ ժողո-
վըրդական տնտեսության հետագա վերելքի,
մասսայական սպառման ապրանքների ար-
տադրության աճման, արտադրանքի ինք-
նարժեքի իջեցման ասպարեզում ձեռք բեր-
ված նորանոր նվաճումները հնարավորու-
թյուն տվեցին սիստեմատիկ կերպով իջեց-
նելու մասսայական սպառման ապրանքնե-
րի գները, որը մեր կառավարության՝ դեպի
սովետական ժողովուրդն ունեցած հոգատա-
րության, նրա կյանքի պայմանների բարե-
լավման վառ ապացույցն է։

Մեր երկրի արտադրության ու շինարա-
րության ծավալման հետ միաժամանակ ա-
վելանում է նաև արտադրության, շինարա-
րության և ժողովրդական տնտեսության
մյուս ճյուղերում զբաղված բանվոր ծառա-
յողների թիվը։ ՍՍՌՄ ժողովրդական տնտե-
սության մեջ բանվորների և ծառայողների
թիվը առաջին եռամսյակում, համեմատած
1949 թվի առաջին եռամսյակի հետ, ավե-
լացել է 1 միլիոն 400 հազար մարդով։
Արդյունաբերության մեջ բանվորների աշ-
խատանքի արտադրողականությունը 1949



թվի առաջին եռամսյակում, համեմատած
1948 թվի առաջին եռամսյակի հետ, աճել է
15 տոկոսով։

Երկրի ժողովրդական տնտեսության արագ
աճը համապատասխանորեն լայն հնարավո-
րություններ է ընձեռնում մեր երկրի աշխա-
տավորության կուլտուր-լուսավորության
զարգացման համար։

1949 թվի առաջին եռամսյակում սովորում
էր 734 հազար ուսանող։ Հեռակա գծով սո-
վորող ուսանողների թիվը կազմում է 298
հազար մարդ։ Ուսանողների թիվը, 1948 թվի
առաջին եռամսյակի համեմատությամբ, ա-
վելացել է 68 հազար մարդով։

1949 թվի առաջին եռամսյակում աշխա-
տում էր ավելի քան 220 հազար տարրական,
յոթնամյա և միջնակարգ դպրոց ու տեխնի-
կում, որտեղ սովորում էր 34 միլիոն 500
հազար մարդ, կամ 2 միլիոն 200 հազարով
ավելի, քան 1948 թվի առաջին եռամսյա-
կում։ Այդ ուսումնական հաստատություն-
ներում աշխատում էր ավելի քան մեկ մի-
լիոն 300 հազար ուսուցիչ։

***

Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչու-
թյան՝ Հայկական ՍՍՌ ժողովրդական տըն-

տեսության վերականգնման ու զարգացման պետական պլանի 1949 թվի առաջին եռամսյակի կատարման արդյունքների մասին հաղորդագրությունից երևում է, որ Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1949 թվի առաջին եռամսյակում, 1948 թվի առաջին եռամսյակի համեմատությամբ, աճել է 40,1 տոկոսով։

Գյուղատնտեսության ասպարեզում 1949 թվի առաջին եռամսյակում հաջողությամբ ընթացավ գարնանային դաշտային աշխատանքների նախապատրաստությունը։ Ռեսպուբլիկայի կոլխոզները մինչև 1949 թվի ապրիլի 1-ը հիմնականում ավարտեցին սերմացուի կուտակումը, այդ թվում հացահատիկային կուլտուրաներինը՝ 105,6 տոկոսով։

ՄՏ կայանները մինչև 1949 թվի ապրիլի 1-ը տրակտորների աշնան-ձմեռային նորոգման պլանը կատարեցին 100,3 տոկոսով և անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ նորոգել են 2,1 տոկոսով ավելի։

1949 թվի առաջին եռամսյակում կապիտալ աշխատանքների ծավալը ռեսպուբլիկայի ամբողջ ժողովրդական տնտեսության գծով, 1948 թվի առաջին եռամսյակի համեմատությամբ, կազմել է 107,8 տոկոս։



Չնայած որ 1949 թվի առաջին եռամսյակում պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության պլանը ռեսպուբլիկայում, ամբողջությամբ վերցրած, կատարված է 86,9 տոկոսով, բայց այն 1949 թվի առաջին եռամսյակում, 1948 թվի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 11,9 տոկոսով։

Ինչպես ամբողջ ՍՍՌՄ-ում, այնպես էլ ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները առաջավոր ձեռնարկությունների փորձի հիման վրա, լայն շարժում են ծավալել սոցիալիստական մրցության նոր վերելքի, շրջանառու միջոցների շրջանառությունն արագացնելու, արտադրանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները և որակը բարելավելու համար, ժողովրդական տնտեսության ասպարեզում արտադրության հետագա արագ աճման համար։

Գյուղատնտեսության աշխատողները ևս Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների, բարձր բերքի վարպետների, սոցիալիստական դաշտերի առաջավորների օրինակով լայնորեն ծավալում են սոցիալիստական մրցությունը, որպեսզի 1949 թվին բոլոր գծերով և մասսայաբար ավելի շատ բերք ստանան, քան 1948 թվականին։

## ԿԻՐՈՎԻ ԱՆՎԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆ ՀՈՒՄՔԻ, ՎԱՌԵԼՔԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*Խնայողության ամենախիստ ռեժիմը անխախտ օրենք է, որով պետք է ղեկավարվի արդյունաբերության յուրաքանչյուր աշխատող և ցեխի յուրաքանչյուր ագիտատոր։*

*Ս. Մ. Կիրովի անվան գործարանի բոլոր 124 ագիտատորները իրենց անցկացրած ագիտացիոն աշխատանքը սերտորեն կապում են գործարանի, ցեխի, հերթափոխի և բրիգադայի առջև դրված առօրյա խնդիրների հետ, իրենց ագիտացիան հագեցնում են համոզիչ փաստերով և կոնկրետ օրինակներով։*

*Դեռ այս տարվա սկզբին ագիտատորների սեմինարում 1—9 ցեխի պետ, կոմունիստ Զ. Առաքելյանը ցեխի ագիտատորներին պարզաբանում էր, թե ինչպես պետք է կառուցել զրույցը, որպեսզի նա մոբիլիզացնի*



*ցեխի աշխատողներին ակտիվ մասնակցելու հիմնական հումքի խնայողության համար մղվող պայքարին, նկատի ունենալով, որ ցեխի կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել տարվա ընթացքում տնտեսել առնվազն հազար տոննա հիմնական հումք։ Ագիտատոր Առաքելյանը ցեխի աշխատողներին բացատրում էր, որ խնայողություն կատարելու համար անհրաժեշտ է առաջին հերթին վերացնել հեղուկի և գոլորշու կորուստը խողովակների միացման կետերից, ինչպես նաև պոմպերից, ապարատների խուփերից և առհասարակ բոլոր միացման կետերից։*

*1—9-ա ցեխը, պահպանելով տեխնոլոգիական ռեժիմի բոլոր կանոնները, կարողացավ տալ հիմնական հումքի մեծ խնայողություն։ Այդ ցեխի ագիտատորներ Գ. Շահնազարյանը և Ս. Մելիքսեթյանը իրենց զրույցների ժամանակ վերլուծում են հերթափոխերի ու բրիգադաների աշխատանքը, ցույց են տալիս ապարատների լավագույն աշխատողներին, փականագործներին ու բրիգադիրներին, որոնք հմտորեն վարելով տեխնոլոգիական պրոցեսը, լավ արդյունքներ են ձեռք բերել։ Ցեխի բոլոր ագիտատորները բանվորների համար մանրամասնորեն վեր-*

լուծեցին ցեխի լավագույն բրիգադիր Վարդանյանի աշխատանքի մեթոդը: Այդ բոլորի շնորհիվ 1—9-ա ցեխը այս տարվա երեք ամսվա ընթացքում տվեց հիմնական հումքի 478 տոննա խնայողություն:

Շատ անկանոնություններ կային 2—5 ցեխի շոգու տնտեսության մեջ: Այդ ցեխի ագիտատորներ Ս. Հովհաննիսյանը և Կ. Կոստյուկովան բոլոր հերթափոխերի աշխատողներին մանրամասնորեն պարզաբանեցին այդ հանգամանքը, նրանք ցույց տվեցին, որ հնոցների կրակատեղերը անփույթ են մաքրում, շլակի հետ միասին կրակացանցի տակն են նետում նաև դեռ չվառված ածուխը, ածուխը վատ են մանրացնում և չեն պահպանում հնոցների աշխատանքի ռեժիմը:

Հնոցապանների անուշադրության պատճառով այդ ցեխում ամեն ամիս անօգուտ կերպով վառվում էր մի քանի տոննա ածուխ: Դեռ նախորդ տնտեսական տարվա վերջերին ցեխի աշխատողների նախաձեռնությամբ կատարվեց լիակատար ստուգում և նորոգվեցին բոլոր շոգեսարքերը, կանոնավորվեց ամբողջ ջերմամեկուսացումը, վերացվեցին շոգու և ջերմության կորուստները, լիովին կարգի բերվեցին խտացուցիչ



անոթները, վենտիլները, ծորակներն ու սողնակները:

Էլեկտրացեխերի ագիտկոլեկտիվի ղեկավար Պ. Հակոբյանը ղեկավարում է այն բրիգադայի աշխատանքը, որը հայտաբերում է կորուստների օջախները և միջոցներ է փնտրում էլեկտրաէներգիա խնայելու համար: Ստուգման ընթացքում պարզվեց էլեկտրաէներգիայի ոչ խնայողաբար ծախսումը մի քանի ցեխերում: 1—8, II—5 ցեխերում և բանմատբաժնի ու մատակարարման բաժնի պահեստներում էլեկտրական լույսը վաղ էր միացվում, իսկ առավոտյան անջատվում էր ժամի 8-ից ոչ շուտ:

1—11 ցեխում յուրաքանչյուր հերթափոխի ժամանակ գլանները հաճախ 20—25 րոպե պարապ տեղն էին պտտում, որի պատճառով ամեն օր գերածախսվում էր մի քանի հարյուր կիլովատ ժամ էլեկտրաէներգիա: Այդ ցեխի ագիտատորները «Կայծակ» պլակատի միջոցով ցույց տվին գլանների հաճախակի պարապուրդի պատճառները և դրա մեղավորներին: Ցեխի ամբողջ բրիգադան պայքար կազմակերպեց գլանների պարապուրդը վերացնելու համար և ապրիլ ամսին ցեխը կարողացավ ձեռք բերել

4275 կիլովատ ժամ էլեկտրաէներգիայի խնայողություն։

Ելնելով անցկացրած ստուգումից, ուժեղացրած վերահսկողության տվյալներից, միջոցներ գործադրվեցին էներգիայի կորուստների օջախները վերացնելու, ինչպես նաև էլեկտրաէներգիայի հետագա խնայողության հասնելու համար։ Միմիայն այս տարվա մարտ ամսին ամբողջ գործարանը արդեն ձեռք էր բերել 474 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի խնայողություն։

1—8 ցեխի ագիտատոր Չերնովը ագիտատորների սեմինարում ասաց. «Պայքար մղելով հումքի խնայողության համար, մենք ամենալուրջ ուշադրությունը նվիրեցինք տեխնոլոգիական ռեժիմի խիստ պահպանմանը։ Մենք ուշի ուշով հետևում ենք նաև ապարատների հերմետիկ փակերին ու խողովակների միացումներին, վերացնում ենք սիստեմում տեղի ունեցող անգամ նվազագույն կորուստները։ Դրա շնորհիվ մեր ցեխը առաջին եռամսյակում ձեռք է բերել 182 տոննա հիմնական հումքի և 285 տոննա այլ նյութերի խնայողություն»։

1—4 ցեխը փետրվարին, գոլորշի չլինելու պատճառով, 140 տոննա արտադրանք պա-



կաս տվեց։ Այդ ցեխի կոլեկտիվի առջև խնդիր ծագեց՝ մարտին կատարել եռամսյակային պլանը։ Ցեխի ագիտատորներ Ս. Թումանյանը, Կ. Խուդոյանը, Ա. Վյուգովան, ցեխի պարտկազմակերպության քարտուղար Ա. Գասպարյանի հետ միասին, ամեն օր յուրաքանչյուր հերթափոխից հետո թողարկում էին «Կայծակ» պլակատը։ Պլակատում նրանք ցույց էին տալիս Ս. Թումանյանի բրիգադան, որպես մի բրիգադա, որը ամենից լավ է կազմակերպել բրիգադայի յուրաքանչյուր անդամի աշխատանքը։ Նրանք ամեն օր պարզում էին, թե որտեղ և ում մեղքով է պակասում արտադրանքը։ Թումանյանը, Խուդոյանը և Վյուգովան օգնում էին աշխատանքի ճիշտ կազմակերպմանը, ցույց էին տալիս, թե ինչ պետք է անել ռեժիմը չխախտելու և առաջադրանքի գրաֆիկը կատարելու համար։ Մարտի վերջերին կոլեկտիվը կատարեց իր ստանձնած պարտավորությունները և առաջին եռամսյակի պլանը գերակատարեց։

Ամբողջ կոլեկտիվի անձնուրաց աշխատանքի շնորհիվ, ինչպես նաև կանոնավոր կերպով անցկացվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի ու սոցիալիստական մրցության լայն կազմակերպման հետևան-

քով, Կիրովի անվան գործարանը այս տարի ձեռք բերեց հետևյալ արդյունքները. չնայած առաջին եռամսյակի ընդարձակված պլանին, գործարանը պլանը գերակատարեց բոլոր ասորտիմենտների գծով և ապահովեց արտադրանքի 5,9 տոկոսով աճը՝ համեմատած 1948 թվականի 4-րդ եռամսյակի հետ։ Տնտեսվեց մոտ 600 տոննա հիմնական հումք, 2.000 տոննա գոլորշի, 300 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 78 տոննա պայմանական վառելիք և այլ նյութեր։ Մայիսի մեկի առթիվ ծավալված սոցիալիստական մրցության հետևանքով գործարանը ապրիլի պլանը կատարեց 112 տոկոսով և ավելացրեց հումքի ու նյութերի խնայողությունը։ Գործարանի կոլեկտիվի լավ աշխատանքը ապահովեց թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցումը։ Այդ բոլորի հետևանքով առաջին եռամսյակի ընթացքում գործարանը ձեռք բերեց արդեն ավելի քան 8 միլիոն ռուբլու շահույթ։

Մեր ագիտատորները այժմ պայքարում են, որպեսզի գործարանը պատվով կատարի 4,5 միլիոն ռուբլու շրջանառու միջոցների ազատման վերաբերյալ վերցրած իր պարտավորությունը և տարվա ընթացքում տալու ոչ պակաս, քան 20 միլիոն ռուբլու շահույթ։

Վ. ԽՈՒԲԼԱՐՅԱՆ



## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՆԳՐԵՍԸ

Այս տարվա փետրվար ամսի վերջերին կուլտուրայի գործիչների պաշտպանության միջազգային խաղաղության կոմիտեն և Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան կոչ արին հրավիրել խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրես։

Այդ կոչը հենց առաջին օրերից լայն արձագանք գտավ աշխարհի բոլոր երկրների աշխատավորների, խաղաղության կողմնակիցների, առաջավոր մարդկության կողմից, որոնք դեմ են արյունառուշտ կապիտալիստների կողմից նախապատրաստվող նոր պատերազմին, որոնք չեն ուզում հրանոթի միս դառնալ կապիտալիստների շահերի, նրանց շահույթների ավելացման համար։

Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսին նախորդեցին մի շարք երկրներում տեղի ունեցած խաղաղության կողմնակիցների ազգային կոնգրեսներ։

Նոր համաշխարհային պատերազմի հրձիգները, առաջին հերթին ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի կապիտալիստները և նրանց հլու հնազանդ կառավարող շրջանները ամեն ջանք ու միջոցներ գործ դրեցին վիժեցնելու կոնգրեսը, սակայն նրանց չհաջողվեց այդ։ Չնայած ֆրանսիական կառավարության կատաղի դիմադրությանը, որն իր ամերիկյան տերերի թելադրանքով հրաժարվեց վիզաներ տալու կոնգրեսին մասնակցելու համար ընտրված բազմաթիվ դելեգատներին, խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսը բացվեց նշանակված օրը՝ ապրիլի 20-ին Փարիզում։

Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի բացման նախօրյակին որոշում ընդունվեց միաժամանակ կազմակերպել կոնգրեսի Պրագայի մասը՝ այն դեմոկրատական երկրների դելեգատների մասնակցությամբ, որոնց ֆրանսիական կառավարությունը, Վաշինգտոնի ճնշմամբ, հրաժարվեց վիզաներ տալու։ Եվ ահա այն պահին, երբ պրոֆեսոր Ժոլիո—Կյուրին բաց արեց կոնգրեսը Փարիզում, Պրագայում Չեխոսլովակիայի Ազգային ժողովի նախագահ դոկտոր Իոնը ողջունեց Համաշխարհային կոնգրեսի դելեգատներին և չեխ ու սլովակ



ժողովուրդների անունից գոհունակություն հայտնեց, որ ինքը կարող է խաղաղության պատվիրակներին տեղ տրամադրել ազատ ելույթների համար, տեղ, որը նրանց մերժել էին Փարիզում։ Եվ այսպիսով կոնգրեսի նիստերը միաժամանակ տեղի էին ունենում և՛ Փարիզում, և՛ Պրագայում։

Փարիզ, կոնգրեսին եկել էին ամբողջ աշխարհի 72 երկրների ներկայացուցիչներ։ Նրանք խոսում էին հասարակական կազմակերպությունների անունից, որոնք համախմբում են տարբեր ազգությունների 600 միլիոն մարդ։ Կոնգրեսին ներկա էին բանվորներ և գյուղացիներ, գիտնականներ և գրողներ, պառլամենտների դեպուտատներ, հասարակական գործիչներ, եկեղեցականներ, տարբեր քաղաքական ու կրոնական համոզմունքների տեր մարդիկ։ Նրանց բոլորին միավորել էր մի բարձր և վեհ նպատակ—պայքար խաղաղության համար, մարդկության փրկությունը նոր պատերազմի սարսափներից։

Սովետական Միության կուլտուրայի, գիտության աշխատողների, հասարակական կազմակերպությունների կողմից կոնգրեսին

մասնակցելու համար ընտրված էին 52 դելեգատ, սակայն ֆրանսիական կառավարությունը վիզա տվեց միայն 8 մարդու։ Այսպիսով Փարիզում կայացած կոնգրեսի աշխատանքներին մասնակցեցին սովետական դելեգատներ, գրողներ Ալեքսանդր Ֆադեևը, Իլյա Էրենբուրգը, Վանդա Վասիլևսկայան, Ալեքսանդր Կորնեյչուկը, Տուրսուն—Զադեն, ակադեմիկոս Վոլգինը, ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի թղթակից-անդամ Ֆեդոտևը, պատերազմում զոհված Սովետական Միության երկու Հերոսների մայր Կոսմոդեմյանսկայան, Սովետական Միության Հերոս օդաչու Մորեևը։

Կոնգրեսը բացվեց հանդիսավոր իրադրության մեջ։ Բացման խոսքով հանդես եկավ ֆրանսիական հայտնի գիտնական Ֆրեդերիկ Ժոլիո—Կյուրին։ Իր ելույթում Ժոլիո—Կյուրին արտահայտեց ամբողջ աշխարհի միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց զգացմունքներն ու իղձերը, որոնք պատրաստ են գործադրելու իրենց բոլոր ուժերը խաղաղությունը պաշտպանելու համար, նոր պատերազմի սպառնալիքների դեմ պայքարելու համար։ Եթե պատերազմի հրձիգների ագրեսիվ քաղաքականության փաստերը միացվեն ռազմական բազաներ ստեղծելու հետ,



ասաց Ժոլիո—Կյուրին, եթե ուշադրության առնվի, թե որտեղ են ստեղծվում այդ բազաները, եթե անալիզի ենթարկվեն վերջերս կնքված ռազմական դաշինքները, մասնավորապես բրյուսելյան և ատլանտյան դաշնագրերը, ապա չի կարելի չհասկանալ, որ պատերազմը, որի մեջ մեզ ուզում են քաշել հանուն «խաղաղության պաշտպանության», հանդիսանում է հակասովետական պատերազմ, պատերազմ, որը բացահայտ կերպով և երկերեսանիությամբ մղում են սոցիալական հետադիմության ուժերը՝ սկսած 1917 թվից։ Պատերազմի, գնալով ավելացող այս վտանգի հանդեպ վաղուց արդեն հասել է ժամանակը արագացնելու առաջադիմության և խաղաղության բոլոր ուժերի միավորումը և գործունեության համաձայնեցումը։ Մենք պետք է սկսենք խոշոր խաղաղ հարձակում ընդդեմ պատերազմի բոլոր ուժերի։

Դելեգատների— ամենատարբեր սոցիալական խմբերի և քաղաքական համոզմունքների տեր մարդկանց ելույթները հաստատեցին, որ ամերիկյան իմպերիալիզմը պատրաստում է ագրեսիվ, հանցագործ պատերազմ, սարկացնում է ժողովուրդներին, մատնում է աշխատավորների կյանքի

պայմանները և փաստորեն ոչնչացնում է նրանց դեմոկրատական իրավունքները։

Ամբողջ կոնգրեսի ուշադրության կենտրոնում էր գտնվում սովետական դելեգացիան։ Աշխարհի բոլոր երկրների ներկայացուցիչները նրանց էին ուղղում ողջույնի, հույսի ու շնորհակալության ջերմ խոսքեր։ Երբ կոնգրեսի նիստի նախագահողը խոսքը տալիս է սովետական դելեգացիայի ղեկավար, գրող Ալեքսանդր Ֆադեևին, ամբողջ դահլիճը ոտքի է կանգնում և բուռն ծափահարություններով ջերմորեն ողջունում է նրան։

Իր բովանդակալից ճառում սովետական դելեգատը մերկացնում է խաղաղության թշնամիներին, նոր պատերազմի հրձիգներին, աշխարհի բոլոր ռեակցիոն ուժերի ոգեշնչող ամերիկյան իմպերիալիզմին։ Պատերազմը դեռ մեր շենքի մոտ չէ,— ասում է Ֆադեևը, սակայն նա դարձել է վաղվա իրական սպառնալիքը։ Արևմտյան Եվրոպայի և Ամերիկայի մի շարք երկրներում, հակառակ ժողովուրդների կամքին, տեղի է ունենում նոր սպառազինումների մրցավազք։ Բնակչությունն ամեն օր այդ զգում է աճող հարկերից և ապրուստի թանկանալուց։ Իմպերիալիստները քարոզում են մար-



դատյացության տեսությունը։ Կենդանի հոգի ունեցող ոչ մի մարդ աշխարհում, լինի նա ամերիկացի, թե ռուս, չի կարող անցնել այնպիսի ասույթների կողքից, ինչպիսիք են Յուջին Օ՛Նեյլի ասույթները. «Ժամանակն է, որ մարդկային ցեղը անհետանա աշխարհի երեսից և հնարավորություն ընձեռի մրջյուններին բնակելի դարձնելու տիեզերքը», կամ թե Հենրի Միլլերի ասույթները. «Ես հույս ունեմ, և հաստատ հավատում եմ, որ ամբողջ քաղաքակիրթ աշխարհը գալիք դարում կսրբվի աշխարհի երեսից»։

Իր ելույթի վերջում Ֆադեևն ասում է.

«Խաղաղության կողմնակիցների այս Համաշխարհային կոնգրեսը ցույց է տալիս, թե ինչպիսի անխորտակելի ուժ ունեն կուլտուրայի գործիչները, երբ միացած են ֆիզիկական աշխատանքի միլիոնավոր մարդկանց հետ։ Հենց այս միաբանությունն ամենից ավելի լրիվ կերպով արտահայտում է բոլոր ժողովուրդների կամքը՝ ամրապնդելու խաղաղությունը։ Թո՛ղ նոր պատերազմի նախաձեռնողներն իմանան— աշխարհի ժողովուրդները կարող են բարկանալ և դաժանորեն պատժել նրանց»։

Կոնգրեսի դելեգատները մեծ հետաքրքրությամբ լսեցին նաև սովետական դելե-

դատներ Իլյա Էրենբուրգի, Կոսմոդեմյանսկայայի, Մարեսևի, Վոլգինի ելույթները։

Ապրիլի 24-ին Փարիզի Մոնրուժ արվարձանի Բուֆֆալո ստադիոնում տեղի ունեցավ վիթխարի միտինգ, որ հրավիրված էր խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի կոչով։ Մոտ կես միլիոն մարդ էր հավաքվել ստադիոնում և նրա մոտակա փողոցներում։ Ամենուրեք երևում էին դրոշակներ, տրանսպորանտներ, պլակատներ, խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի խորհրդանիշեր՝ խաղաղության սպիտակ աղավնու պատկերը։

Փարիզի իշխանությունները Մոնրուժի ռայոնն էին բերել մոտոռացված ոստիկանության բազմաթիվ զորամասեր արգելակելու համար ցուցարարների երթը, բայց չնայած ոստիկանության հրահրած բազմաթիվ միջադեպերին ցուցարարները շարունակում էին անզուսպ հոսանքով առաջ շարժվել դեպի Բուֆֆալո ստադիոնը։ Խաղաղության «քարավանների» շատ մասնակիցներ Ֆրանսիայի տարբեր քաղաքներից ու բնակավայրերից ժամանեցին գնացքներով, Սեն գետով։ Այդտեղ կային նաև «խաղաղության քարավաններ», որոնք ժամանել էին Իտալիայից, Բելգիայից, Հոլլանդիայից, Շվեցարիայից և



Ֆրանսիայի հարևան մյուս երկրներից։

Բազմաթիվ մարդկանց միահամուռ օվացիայի տակ տրիբունայի առջևով անցնող շարասյուների շարժումը տևեց մինչև երեկոյան ժամը 7-ը։ Ամենուրեք երևում էին պլակատներ. «Տարնի և Գարոննի երկաթուղայինները հայտարարում են, որ ֆրանսիացիների արյունը չի վաճառվում դոլլարով։ Պատերազմ պատերազմին», «Կորչի Ատլանտյան պակտը, մահվան պակտը»», «Շնորհակալություն ընկեր Ստալինին՝ խաղաղության պաշտպանության օգտին գործողությունների համար», «Ֆրանսիական մայրերը երբեք իրենց զավակներին չեն տա Սովետական Միության դեմ պատերազմելու համար» և այլն։

Փարիզը դեռևս երբեք չէր տեսել կայուն խաղաղության և բոլոր ժողովուրդների դեմոկրատական համագործակցության համար հանդես եկող ժողովրդի այդքան հզոր միասնությունը։

Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսն իր աշխատանքներն ավարտեց ապրիլի 25-ին։ Կոնգրեսը որոշեց ստեղծել խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի մշտական կոմիտե և հաստատեց նրա կազմը։ Կոնգրեսի

ընդունած բանաձևում նշվեցին կոմիտեի անելիքները։ Կոմիտեն պետք է ամբողջ աշխարհին ծանոթացնի կոնգրեսի նյութերի, նրա որոշումների հետ։ Նրա առաջ խնդիր դրվեց ապահովել փ. պաշտպանություն խաղաղության ցուցաբերած գործունեության վերաբերյալ ինֆորմացիայով և այդ ասպարեզում զարգացնել փորձի փոխանակումը զանազան երկրների միջև, աջակցել հօգուտ խաղաղության ծավալվող շարժմանն ու գործունեությանը հնարավոր բոլոր միջոցներով, այն է՝ ուղարկել դելեգացիաներ, հրավիրել խաղաղության ռեգիոնալ կոնգրեսներ և այլն։ Կոմիտեն պետք է անդադար մերկացնի պատերազմի հրձիգների մեքենայությունները և համաձայնեցնի խաղաղության ուժերի գործունեությունը ընդդեմ պատերազմի հրձիգների ու նրանց պրոպագանդայի։ Նա պետք է օժանդակի հօգուտ խաղաղության կուլտուրայի ասպարեզում կատարվող բոլոր կոլեկտիվ ու անհատական գործողություններին, այն է՝ մրցանակներ սահմանի խաղաղության գործին օգտակար գրականության ու արվեստի ստեղծագործությունները, կինոֆիլմերը խրախուսելու համար։ Վերջապես, նա պետք է նախապատրաստի խաղաղության կողմնակիցների հա-



ջորդ Համաշխարհային կոնգրեսը։ Կոնգրեսի ընդունած բանաձևի համաձայն կոմիտեի առաջ խնդիր դրվեց՝ կազմակերպել խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի կոմիտեի գործունեության վերաբերյալ պրոպագանդայի միջոցներ գլխավորապես հրատարակելով տպագիր օրգան մի քանի լեզուներով։

Կոնգրեսի մասնակիցները հուսալական խանդավառությամբ ընդունեցին խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի Մանիֆեստի տեքստը։

Այս նշանավոր կոնգրեսը, գրում է «Պրավդան», կարևոր էտապ էր խաղաղության և անվտանգության համար պայքարող ժողովուրդների ուժերի համախմբման համար։ Դեմոկրատական ուժերը բոլոր երկրներում աչալուրջ կերպով հետևում և մերկացնում են պատերազմի հրձիգների մեքենայությունները, որոնք նախապատրաստում են նոր իմպերիալիստական ավանտյուրաներ։ Դեմոկրատական ուժերի միավորումը և աճը, խաղաղության համար համաժողովրդական շարժման աճող թափը գրավական են այն բանի, որ պատերազմի հրձիգների հանցագործ պլանները կխորտակվեն։

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Ակադեմիկոս* Վ. Ռ. ՎԻԼՅԱՄՍ.— «Երկրագործության հիմունքները»: *Հայպետհրատ, 1948 թ., 261 էջ, գինը 9 ռ.:*

Խ. ՄԻՐԻՄԱՆՅԱՆ.— «Դոկուչաևի—Կոստիչևի—Վիլյամսի կոմպլեքսը»: *Հայպետհրատ, 1949 թ., գինը 1 ռ.:*

Հ. ՍՄԲԱՏՅԱՆ, Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ.—«Սպարտակ» կոլխոզի Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների փորձը»: *Հայպետհրատ, 1949 թ., 63 էջ, գինը 2 ռ. 50 կ.:*

---

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

---

*ՎՖ 01731* *Պատվեր № 394* *Տիրաժ 8.500*
*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

---

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 9 1949 г.